# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—73։

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ՆՈՐ ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Դեկտեմբերի 24-ին, հայրենասիրական բուռն խանդավառության և քաղաքական բարձր ակտիվության իրադրության մեջ տեղի ունեցան Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները։ Այդ բաղձալի օրը վերածվեց համաժողովրդական տոնի։ Ռեսպուբլիկայի հարյուր հազարավոր ընտրողներ, ժողովուրդների մեծ առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար ընկեր Ստալինի անունը շուրթերին, մոտեցան քվեատուփերին և որպես մեկ մարդ իրենց ձայնը տվին կոմունիստների ու անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

Երախտապարտ հայ ժողովուրդը, ինչպես միշտ, այս անգամ էլ դրսևորեց իր աննկուն կամքն ու միասնությունը, անսահման սերն ու նվիրվածությունը բոլշևիկների փառա-

պանծ պարտիայի, Սովետական իշխանության և կոմունիզմի ճարտարապետ մեծ Ստալինի նկատմամբ։

Պերճախոս են տեղական Սովետների ընտրությունների արդյունքները։ Աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովետների ընտրություններին մասնակցել է ընտրողների 99,99 տոկոսը, գյուղական և ավանային Սովետների ընտրություններին՝ ընտրողների 100 տոկոսը։ Այսպիսով, ընտրություններին մասնակցել են համարյա բոլոր ընտրողները, չնչին բացառությամբ։ Քվեարկությանը մասնակցած ընտրողների 99,88 տոկոսը իր ձայնը տվել է քաղաքային և 99,84 տոկոսը՝ գյուղական ու ավանային Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին։

Այդ օրը առանձնապես բուռն խանդավառություն էր տիրում Երևանի քաղաքային Սովետի ընտրությունների № 1 օկրուգում, որտեղ ռեսպուբլիկայի մայրաքաղաքի Սովետի դեպուտատ էր քվեարկվում սիրելի հայր և ուսուցիչ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի մեծ առաջնորդ հարազատ Ստալինը։ Առաջնորդի անունը կրող Երևանի Ստալինյան ռայո-



նի բանվորներն ու բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները, ռայոնի բոլոր աշխատավորները աշխատանքային նորանոր սխրագործություններով միշտ էլ բարձր են պահել այն մեծ պատիվն ու վստահությունը, որը նրանց պարգևել է երկիրը՝ տալով ռայոնին Ստալինյան անունը։ Օկրուգի բոլոր ընտրողները, նրանց թվում և «քվեարկության վկայական»-ով՝ Մոսկվայից, Լենինգրադից, Վրաստանի և Հայաստանի տարբեր քաղաքներից ու շրջաններից եկած հայրենասեր ընտրողները սովետական քաղաքացուն հատուկ հպարտությամբ, հաղթանակի նկատմամբ հավատով լի և տոնական բարձր տրամադրությամբ մոտեցան քվեատուփերին իրենց ձայնը տալու հարազատ Ստալինին։ Դեռ առավոտյան ժամը 11-ն էր, երբ օկրուգի բոլոր ընտրողները, որպես մեկ մարդ, իրենց ձայնը տվել էին ընկեր Ստալինի օգտին։

Այդ մասին է վկայում Երևանի քաղաքային Սովետի ընտրությունների № 1 օկրուգի ընտրական հանձնաժողովի հաղորդագրությունը, ուր ասված է, որ օկրուգի բոլոր ընտրողները 100 տոկոսով մասնակցել են ընտրությանը և բոլորը, առանց բացառության, ձայն են տվել ընկեր Ստալինի օգ-

տին։ № 1 օկրուգի ընտրողների ձայնը դա հայ ժողովրդի ձայնն է, ժողովուրդ, որը իր ազատության, երջանիկ կյանքի և փայլուն ապագայի համար պարտական է մեծ Ստալինին։ Ահա թե ինչ են գրում ընտրողները բյուլետենի հետ քվեատուփ իջեցրած իրենց նամակներում։

«Քվեարկում եմ հանուն Ստալինի, հանուն խաղաղության, հանուն աշխատավորության երջանիկ կյանքի»։ Երևանի № 1 ընտրական օկրուգի ընտրողներից մեկը, արտահայտելով մեր ժողովրդի կամքը, իր բանաստեղծական խոսքի մեջ ասում է.

«Հայրենիքս վարդ է դառել,
Քո շնորհիվ, Ստալին ջան»։

«Ստալինը մեր երջանկությունն է, մեր կյանքը» գրում է մեկ ուրիշը։ «Հայ ժողովուրդը երախտապարտ է Ձեզ ընկեր Ստալին, նա քվեարկում է Ձեր օգտին»։ «Բոլորս երկար-երկար տարիների կյանք ենք ցանկանում Ձեզ, մեր սիրելի առաջնորդ»։ «Ես ոչ միայն իմ ձայնը, այլ նաև պատրաստ եմ տալ իմ կյանքը ընկեր Ստալինին»։ Այդպես են գրել հազարավոր ընտրողներ ռեսպուբլիկայի ընտրական բոլոր օկրուգներում, իրենց ձայնը տալով սիրելի առաջնոր-



դին, նրա մարտական զինակիցներին և հայ ժողովրդի արժանավոր զավակներին։

Երևանի ընտրողները բուռն ոգևորությամբ ռեսպուբլիկայի մայրաքաղաքի Սովետի դեպուտատներ ընտրեցին ժողովուրդների իմաստուն առաջնորդ հարազատ Ստալինի մարտական զինակիցներ, Սովետական պետության ու բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչներ ընկ. ընկ. Վ. Մ. Մոլոտովին, Գ. Մ. Մալենկովին, Լ. Պ. Բերիային, Ա. Ի. Միկոյանին և Հայաստանի բոլշևիկների փորձված ղեկավար ընկ. Գր. Հարությունյանին։

Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի օգտին, ռեսպուբլիկայի ընտրողները իրենց ձայնը տվին Սովետական պետության օգտին, իրենց հարազատ պետության հետագա հզորացման օգտին, խաղաղության ու դեմոկրատիայի հենարանի օգտին։ Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի օգտին, սովետական ընտրողները իրենց ձայնը տվին երկրի հետագա զարգացման ու ծաղկման օգտին, ժողովուրդի նյութական ու կուլտուրական կյանքի է՛լ ավելի բարգավաճման ու բարձրացման օգտին, կոմունիզմի վիթխարի կառուցումների օգտին, սովետական ժո-

ղովուրդների Ստալինյան բարեկամության հետագա ամրացման օգտին։ Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, բոցավառ հայրենասիրությամբ լցված սովետական ընտրողները իրենց ձայնը տվին կոմունիզմի ճարտարապետ, համայն աշխարհի պրոգրեսիվ մարդկության առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։

Դեկտեմբերին աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները ՍՍՌՄ-ում ավարտվեցին ամենուրեք։ Աշխարհի ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի՝ Ստալինյան Կոնստիտուցիայի հիման վրա դեկտեմբերի 17-ին բուռն խանդավառության իրադրության մեջ կայացան ՌՍՖՍՌ, Ուկրաինական, Բելոռուսական, Ղազախական, Վրացական, Լիտվական, Լատվիական, Էստոնական և Կարելո-Ֆինական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների տեղական Սովետների ընտրությունները։ Դեկտեմբերի 24-ին արտակարգ ոգևորությամբ տեղի ունեցան տեղական Սովետների ընտրությունները Տաջիկական, Ուզբեկական, Կիրգիզական, Ադրբեջանական, Թուրքմենական, Մոլդավական և



Հայկական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաներում։

Հեռավոր Արկտիկայում, թե միջին Ասիայի տափաստաններում, Հեռավոր Արևելքում, թե արևավառ Վրաստանում ու Հայաստանում, տունդրաներում, թե տափաստաններում, հոյակերտ քաղաքներում, թե լուսավոր ավաններում, Մոսկվայում, Լենինգրադում, թե Վլադիվոստոկում, Կալինինգրադում, թե Բաքվում, Կիևում, թե Աշխաբադում սովետական մարդիկ համակված էին մի ընդհանուր զգացումով՝ էլ ավելի սերտորեն համախմբվել Լենինի-Ստալինի պարտիայի շուրջը, միշտ անսասան պահել սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, սովետական տերության հզորությունը։ Եվ իրոք, տեղական Սովետների ընտրությունները ամենուրեք վերածվեցին քաղաքական վիթխարի ցույցի։ Աշխարհում դեռևս չկա մի երկիր, որտեղ աշխատավորները, ընտրողները այնպիսի սիրով ու ոգևորությամբ մասնակցեն ընտրություններին, ինչպիսին մեր երկրումն է— Սովետական երկրում։

Անծայրածիր մեր Հայրենիքում նորից ու նորից հաղթանակեց Սովետական Սոցիալիստական դեմոկրատիան։ Մեր երկրի մարդիկ մի անգամ ևս ցուցադրեցին սովետա-

կան դեմոկրատիզմի անվիճելի առավելությունները բուրժուական այսպես կոչված «դեմոկրատիզմի» նկատմամբ։

Ոգեշնչված կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի հաղթանակներով, հայ ժողովուրդը, ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հետ միասին, նոր ուժով ու եռանդով կպայքարի մեր երկրի հաղթական վերելքի համար, կոմունիստական հասարակարգի հաղթանակի համար։

Փա՛ռք ժողովուրդների ընտրյալին, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի դրոշակակիր հարազատ Ստալինին։

—○—

---

## ՎՈԼԳԱ-ԴՈՆ ՆԱՎԱՐԿԵԼԻ ՋՐԱՆՑՔ ԿԱՌՈՒՑԵԼՈՒ ԵՎ ՌՈՍՏՈՎԻ ՈՒ ՍՏԱԼԻՆԳՐԱԴԻ ՄԱՐԶԵՐԻ ՀՈՂԵՐԸ ՈՌՈԳԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում է ընդունել Վոլգա-Դոն նավարկելի ջրանցք կառուցելու և Ռոստովի ու Ստալինգրադի մարզերի հողերը ոռոգելու մասին։

Դեռևս պատերազմից առաջ սկսվել էր Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի կառուցումը։ Վոլգայի և Դոնի միացումով պետք է ավարտվեին այն հսկայական աշխատանքները, որ կատարվել էին սովետական իշխանության տարիներին Սպիտակ, Բալթիկ ու Կասպից ծովերը Ազովի և Սև ծովերի հետ միացնող նավարկելի ուղիների վերակառուցման ու շինարարության և մասսայական բեռների փոխադրման համար տրանզիտային ջրային ուղու ստեղծման ապարեզում։

Պատերազմը ընդհատեց սկսած շինարարությունը։

ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն տալով Վոլգա—Դոն ջրային ուղու ստեղծմանը և դրա հետ միասին հաշվի առնելով, որ այդ շինարարությունը թույլ է տալիս լայնորեն զարգացնել Ռոստովի ու Ստալինգրադի մարզերի կիսաանապատային և չորային շրջանների ոռոգումն ու ջրովի դարձնելը, երեք տարի առաջ, կառավարության որոշմամբ, նորից ծավալվեցին Վոլգա—Դոն ջրանցքի կառուցման աշխատանքները։ Ընդսմին կառավարությունը հաշվի էր առել, որ Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի անցկացումը ոչ մասնակի ու երկրամասային մասշտաբի խնդիր է, այլ համամիութենական նշանակություն ունեցող մի խնդիր, որի նպատակն է ՍՍՌՄ Եվրոպական մասի բոլոր ծովերը միացնել ջրային-տրանսպորտային միասնական սիստեմում։

Վոլգա—Դոն ջրային ուղու շահագործման հանձնելն արագացնելու և Ռոստովի ու Ստալինգրադի մարզերի կիսաանապատային և չորային հողերը ոռոգելու ու ջրովի դարձնելու նպատակով, ինչպես նաև հաշվի առնելով շինարարական աշխատանքների հաջող ծավալումը և Վոլգոդոնշինի բարձր հագեցվածությունը հզոր էքսկավա-



տորներով, շինարարական մեխանիզմներով ու տրանսպորտային միջոցներով, որոնք թույլ են տալիս լրիվին մեքենայացնելու հողային ու բետոնային աշխատանքները, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը որոշել է.

1. Վոլգա—Դոն ջրային ուղու ստեղծման ավելի վաղ սահմանված ժամկետը կրճատել 2 տարով և 1951 թվականին ավարտել.

ա) Ստալինգրադ քաղաքից մինչև Դոնի Կալաչ քաղաքը ընկած շրջանում, Վոլգա գետը Դոն գետի հետ միացնող Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի կառուցումը՝ 101 կիլոմետր երկարությամբ, տասներեք շլյուզներով, երեք ամբարտակով, ջրհան կայաններով, նավամատույցներով, կամուրջներով և այլ կառուցվածքներով.

բ) Ցիմլյանսկայա ստանիցայի շրջանում Դոնի վրա հիդրոհանգույցի կառուցումը՝ 12,6 միլիարդ խորանարդ մետր օգտակար ծավալ ունեցող կարգավորիչ ջրամբարով՝ բաղկացած 500 մետր երկարությամբ բետոնե ջրաթողարկիչ ամբարտակից, 12,8 կիլոմետր երկարությամբ հողե ամբարտակից, երկու նավարկելի շլյուզներից, գետային նավահանգստից և ամբարտակի վրայով

*երկաթուղային ու խճուղային մագիստրալային անցուղիներից.*

*գ) Ցիմլյանսկայայի հիդրոհանգույցի ամբարտակին կից հիդրո-էլեկտրակայանի կառուցումը՝ 160 հազար կիլովատ սահմանված կարողությամբ, ոռոգելի հողագործության ու արդյունաբերության շրջաններին էժան էլեկտրաէներգիա մատակարարելու համար։*

*2. Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքը և Ցիմլյանսկայայի հիդրոհանգույցը հիդրոէլեկտրակայանի հետ միասին շահագործման հանձնել 1952 թվականի գարնանը։*

*3. 1951—1956 թվականներին իրագործել Դոն գետի ջրային ռեսուրսների բազայի վրա ոռոգման սիստեմների կառուցումը՝ 750 հազար հեկտար հողեր ոռոգելու և երկու միլիոն հեկտար ջրովի դարձնելու համար, այդ թվում՝ Ռոստովի մարզում 600 հազար հեկտար ոռոգելու և 1 միլիոն հեկտար ջրովի դարձնելու, Ստալինգրադի մարզի հարավային շրջաններում՝ 150 հազար հեկտար ոռոգելու և 1 միլիոն հեկտար ջրովի դարձնելու համար։ Ոռոգելի հողերը օգտագործել առաջին հերթին ցորեն և բամբակ ցանելու համար։*

—O—

---

# ԿԻՆԸ ՍՍՌՄ-ՈՒՄ ՄԵԾ ՈՒԺ Է

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՀԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղար

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ առաջին անգամ լիակատար ազատագրություն բերեց կնոջը և նրան դարձրեց հասարակական կյանքի իրավահավասար ու ակտիվ մասնակիցը։*

*Պրոլետարիատի մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը միշտ էլ հսկայական նշանակություն են տվել կնոջ ազատագրության գործին, նրա իրավահավասարությանը և նրա ներգրավմանը հասարակական ակտիվ կյանքի մեջ։*

*Վլադիմիր Իլյիչ Լենինը ասում էր, որ ամեն մի երկրի քաղաքակրթության մասին կարելի է դատել այն բանով, թե այնտեղ ինչպիսի դրության մեջ են գտնվում աշխատավոր կանայք, ինչպիսի իրավունքներով են օգտվում նրանք։*

Լենինը մատնանշում էր, որ «...Սովետական իշխանության սկսած գործը կարող է առաջ մղվել միայն այն ժամանակ, երբ ամբողջ Ռուսաստանում հարյուրավոր կանանց փոխարեն այդ գործին մասնակցեն միլիոնավոր ու միլիոնավոր կանայք։ Այն ժամանակ սոցիալիստական շինարարությունը Ռուսաստանում կլինի այնպես հաստատուն, որ ոչ մի տեսակի արտաքին թշնամիներ մյուս երկրներում և Ռուսաստանի ներսում սարսափելի չեն լինի Սովետական Ռեսպուբլիկայի համար»։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի առաջին իսկ օրերից բոլշևիկյան պարտիան, Լենինի և Ստալինի ցուցումով, երկրում մեծ աշխատանք ծավալեց կանանց սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու ուղղությամբ։

Ընկեր Ստալինը 1933 թվականին հարվածային կոլտնտեսականների Առաջին համագումարում արտասանած իր ճառում ասաց, որ պարտիայի հերթական ու կարևորագույն խնդիրն է՝ հարյուր-հազարավոր կին աշխատավորուհիների ներգրավումը սոցիալիստական շինարարության մեջ։

Լենինի-Ստալինի պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի հոգատարության շնորհիվ



մեր երկրում ստեղծված են բոլոր պայմանները կանանց հասարակական ակտիվ կյանքի մեջ ներգրավելու, նրանց ընդունակությունների ու ստեղծագործական ուժերի լիակատար զարգացման համար։ Ստալինյան հնգամյակների տարիներին աճեցին կանանց հիանալի կադրեր, որոնք տղամարդկանց հետ միասին դարձան սոցիալիստական շինարարության ոչ միայն ակտիվ մասնակիցները, այլև հրամանատարները՝ նրա բոլոր բնագավառներում։ Սովետական Միության միլիոնավոր կանայք ստացան բարձրագույն և միջնակարգ կրթություն, տիրապետեցին բարդ պրոֆեսիաների, դարձան բարձրորակ աշխատողներ։ Մեր երկրում բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների ընդհանուր թվի համարյա կեսը, իսկ մանկավարժների և բժիշկների կեսից ավելին կանայք են։ Ավելի քան 300 հազար կանայք աշխատում են որպես ինժեներ և տեխնիկներ։ Կոլխոզային գյուղի մոտ երկու հազար կանայք բարձր բերք աճեցնելու և անասնաբուծության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։ Գիտության, գրականության և արվեստի բնագավառում աչքի ընկնող աշխա-

տանքների համար մեծ թվով կանայք ստացել են Ստալինյան մրցանակներ։

Սովետական երկրում կանայք, օգտվելով Ստալինյան Կոնստիտուցիայով իրենց տրված իրավունքից, տղամարդկանց հետ հավասար, ակտիվորեն մասնակցում են պետության ղեկավարման գործին։ Տասնյակ հազարավոր կանայք աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատներ են, Միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ։ 280 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են։ Հազարավոր կանայք կոլտնտեսություններում ընտրված են վարչությունների նախագահներ, աշխատում են որպես անասնապահական ֆերմաների վարիչներ, բրիգադիրներ, օղակավարներ։

Սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում սովետական կանայք հանդես են բերում իրենց ակտիվությունը, ստեղծագործական նախաձեռնությունը, ցույց են տալիս աշխատանքի լավագույն օրինակներ։ Մեր ամբողջ երկրին հայտնի են արտադրության նորարարներ, «Փարիժյան Կոմունա» կոշիկի ֆաբրիկայի բրիգադիր Լիդիա Կորաբելնիկովայի, Ստալինյան մրցանակի լաուրեատ ստախանովականուհի



Վալենտինա Ցոմինայի, Մոսկվայի Ավտոգործարանի բանվորուհի, Ստալինյան մրցանակի լաուրեատ Նինա Վասիլևայի, Մոսկվայի Էլեկտրալամպերի գործարանի ցեխի պետ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Զինաիդա Կոնդրաշևայի և շատ ուրիշ առաջավոր կանանց անունները։

Սովետական կարգերի շնորհիվ կինը տնտեսական և քաղաքական կյանքի ակտիվ մասնակից է դարձել նաև մեր ռեսպուբլիկայում։ Չկա սոցիալիստական շինարարության մի բնագավառ, որտեղ հայ կինը, տղամարդուն հավասար, հանդես չբերի աշխատանքային ակտիվություն ու նախաձեռնություն, անձնվեր աշխատանքով չպայքարի հանուն հարազատ Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման։

Սովետական Հայաստանում բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի 40 տոկոսից ավելին կազմում են կանայք։ Տասնյակ-հարյուրավոր կանայք ռեսպուբլիկայում հայտնի են որպես առաջավոր ստախանովականներ, որպես արտադրության նորարարներ, որոնք նոր ձևով աշխատելու, աշխատանքային բարձր արտադրողականության հասնելու փայլուն օրինակներ են տալիս։

Երևանի Կիրովի անվան գործարանի ռացիոնալիզատորների թվում կան 32 կանայք։ Իրենց ռացիոնալիզատորական առաջարկություններով նրանք օգնեցին գործարանին լուծելու արտադրության մի շարք դժվարին հարցեր։ Այդ առաջարկությունների կենսագործման շնորհիվ գործարանը ստացավ 638 հազար ռուբլու եկամուտ։ Հումքը խնայողաբար օգտագործելու համար Միության մեջ ծավալված շարժմանը մեր ռեսպուբլիկայում արձագանքողներից առաջինը հանդիսացավ Երևանի կոշիկի 3-րդ ֆաբրիկայի ստախանովականուհի Մարիա Թումանյանը։ Լենինականի Տեքստիլ կոմբինատի մանողուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Եվդոկիա Լիխաչևայի օրինակով քաղաքում լայնորեն ծավալվեց հետ մնացող բանվորներին առաջավորներին հասցնելու շարժումը։

Կարելի է թվել տասնյակ-հարյուրավոր առաջավոր բանվորուհիների անուններ, որոնք ստախանովյան անձնվեր աշխատանքով ժամկետից շատ առաջ կատարել են իրենց նոր հնգամյա պլանները։ Դրանց թվումն են Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի բանվորուհի Եկատերինա Բատուևան, Կաշվե-գալանտերիայի ֆաբրիկայի



բանվորուհի Կլարա Ավետիսյանը, Մահուդի ֆաբրիկայի բանվորուհի Ռոզա Ղազարյանը և շատ ուրիշներ։

Մեր ռեսպուբլիկայում աշխատանքային մեծ ձանակ են կազմում կոլտնտեսուհիները։ Տղամարդկանց հետ հավասար նրանք պայքարում են կոլտնտեսային կարգի ամրապնդման, սոցիալիստական գյուղատնտեսության անշեղ վերելքի համար։ Հանուն հարազատ Հայրենիքի բարգավաճման Հայաստանի կոլտնտեսուհիների կատարած ազնիվ աշխատանքի փայլուն ապացույց է հանդիսանում այն, որ գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար ՍՍՌՄ շքանշաններով ռեսպուբլիկայում պարգևատրվածների մոտ 60 տոկոսը կանայք են։ Բարձր բերքի վարպետ 58 կանանց շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Իրենց անձնվեր, լավագույն աշխատանքով ռեսպուբլիկայում հռչակված են բարձր բերքի վարպետներ, Հոկտեմբերյանի շրջանի Փոքր Շահրիար գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, այժմ ուսանողուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հոկտեմբերիկ Քոլոզյանը, Ախուրյանի շրջանի Ճակնդեղա-

գործական օղակի օղակավարուհի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Հեղուշ Նազարեթյանը, Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Միսե Կարապետյանը և շատ ուրիշներ։

Մեր ռեսպուբլիկայի կանայք փզալի ավանդ են ներդնում նաև գիտության զարգացման գործում։ Ավելի քան 700 կին գիտական աշխատողներ աշխատում են Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի գիտահետազոտական ինստիտուտներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 17-րդ համագումարում ընկեր Ստալինը մատնանշեց, որ կանայք կազմում են մեր երկրի բնակչության կեսը, աշխատանքային մի վիթխարի բանակ, որ նրանք կոչված են դաստիարակելու մեր մանուկներին, այսինքն մեր ապագան։ «Ահա թե ինչու,— ասաց ընկեր Ստալինը,— մենք պետք է ողջունենք աշխատավոր կանանց հասարակական աճող ակտիվությունը և ղեկավար պոստերի համար նրանց առաջ



քաշելը, որպես մեր կուլտուրականության աճման անտարակուսելի նշան»։

Սովետական կառավարությունը ամենօրյա ջերմ հոգատարություն է հանդես բերում մայրերի նկատմամբ։ Բազմազավակ մայրերը պետությունից ստանում են թոշակ, պարգևատրվում շքանշաններով ու մեդալներով։ Տասնյակ հազարավոր կանայք արժանացել են «Հերոսուհի մայր» բարձր կոչման։ Սովետական կառավարությունը միջոցներ չի խնայում մայրության և մանկության պահպանության համար։ Բավական է ասել, որ Սովետական պետության կողմից միայն մեկ տարվա ընթացքում բազմազավակ և միայնակ մայրերին բաց թողնված նպաստների գումարը գերազանցում է այնպիսի մի ռեսպուբլիկայի տարեկան բյուջեից, ինչպիսին Ուկրաինական ՍՍՌ-ն է։ Ամեն տարի հսկայական գումարներ են բաց թողնվում ծննդատների, մանկամսուրների ու մանկապարտեզների, կոնսուլտացիաների, կաթնախոհանոցների և մոր ու մանկան պահպանության այլ հիմնարկների կառուցման, եղածների լայնացման համար։ Սովետական կանայք վստահ են իրենց զավակների պայծառ ապագայի համար։

*Մեր երկրում կնոջ իրավունքներն ամրապնդված են Սովետական պետության հիմնական օրենքով՝ Ստալինյան Կոնստիտուցիայով։ Սովետական կանայք, խորը երախտագիտությամբ լցված դեպի մեր Կոնստիտուցիայի հանճարեղ կերտող մեծ Ստալինը, դեպի բոլշևիկների հարազատ պարտիան ու Սովետական կառավարությունը, մեծագույն եռանդով աշխատում են Հայրենիքի բարգավաճման, կոմունիզմի կառուցման համար։*

—O—



# 1950 ԹՎԱԿԱՆԸ

(Նյութեր զրույցների համար)

*Ավարտվում է 1950 թվականը։ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների հզոր Միությունն այս տարին փակում է կոմունիզմի կառուցման գործում ձեռք բերած նոր, փայլուն հաղթանակներով, մեր երկրի միջազգային դրությունն է՛լ ավելի ամրապնդված։ Փայլուն են նաև սոցիալիզմի ուղին ոտք դրած, ՍՍՌՄ-ի գլխավորած խաղաղության լագերում գտնվող ժողովրդական դեմոկրատիայի երկրների ձեռք բերած հաջողությունները՝ իրենց տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառում։ Այս տարվա ընթացքում ավելի ևս ամրապնդվեց ու հզորացավ խաղաղության ու դեմոկրատիայի լագերը, սոցիալիզմի լագերը։*

*1950 թվականը միանգամայն այլ արդյունքներով է փակում կապիտալիստական*

աշխարհը, Ամերիկայի Միացյալ Նահանգների կողմից գլխավորվող պատերազմի հրըձիգների ճակատը։ Սպառազինության կատաղի մրցավազքի ու ռազմական անհեթեթ ծախսերի հետևանքով աշխատավորական լայն զանգվածների տնտեսական դրության հետագա վատթարացում, գործազուրկների բանակի նոր աճ, առանց այն էլ խղճուկ դեմոկրատական ազատությունների ավելի սահմանափակում ու ոչնչացում և այդ բոլորից հետո է՛լ ավելի մռայլ հեռանկար,— ահա թե ինչով է փակում այս տարին կապիտալիզմի ճակատը, պատերազմի հրձիգների ճակատը։

1950 թվականը մեր երկրի պատմության մեջ նշանավոր է նրանով, որ այն հանդիսանում է հետպատերազմյան ստալինյան նոր հնգամյակի վերջին, եզրափակիչ տարին։ Եզրափակելով այդ տարին ու հանրագումարի բերելով հնգամյա պլանի արդյունքները, սովետական ամբողջ ժողովուրդը մեծագույն գոհունակությամբ նշում է, որ մեր երկրի ժողովրդական տնտեսության հետպատերազմյան վերականգնման ու զարգացման վերաբերյալ մեծ Ստալինի նախագծումները հաջողությամբ կենսագործված են։ Սովետական Միությունն այսօր ավելի ամուր և հզոր է, քան երբևէ։



Հնգամյա պլանով սահմանվել էր, որ Սովետական Միության ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1950 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, պետք է ավելանար 48 տոկոսով։ Մեր արդյունաբերությունը ոչ միայն հասել է արտադրության այդ մակարդակին, այլև վաղօրոք գերազանցել է այն։ Արդեն 1949 թվականի 4-րդ եռամսյակում համախառն արտադրանքի միջին ամսական թողարկումը 1940 թվականի մակարդակը գերազանցեց 53 տոկոսով։ Ընթացիկ տարում արդյունաբերական արտադրության ծավալն է՛լ ավելի ընդարձակվեց։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման գծով նախապատերազմյան մակարդակը 1950 թվականի 10 ամիսների ընթացքում գերազանցվեց 70 տոկոսով։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության մեջ։ Ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7 միլիարդ 600 միլիոն փութ, այսինքն՝ 300 միլիոն փթով ավելի, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Ներկայումս հանրային մթերատու անասնաբուծության նախապատերազմյան մակարդակը ոչ միայն լրիվին վերականգնվել է,

ալէս այդ մակարդակը զգալի չափով գերազանցվել է։

Մեր երկրում աշխատավոր մասսաների նյութական բարեկեցության աճի փայլուն ցուցանիշն է հանդիսանում ազգային եկամտի աճը։ Հնգամյա պլանով սահմանված էր, որ ազգային եկամտի ծավալը 1950 թվականին պետք է նախապատերազմյան մակարդակը գերազանցեր 38 տոկոսով։ 1950 թվականին ազգային եկամուտը նախապատերազմյան մակարդակը կգերազանցի ավելի քան 60 տոկոսով։

1950 թվականի մարտի 1-ին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ տեղի ունեցավ պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցում, որը մեր պարտիայի և կառավարության կողմից ժողովրդի նյութական բարեկեցության նկատմամբ ցուցաբերվող ամենօրյա հոգատարության մի նոր, փայլուն ապացույց էր։ Գների այդ նոր իջեցման հետևանքով բնակչությունը տարեկան կշահի առնվազն 110 միլիարդ ռուբլի։

1950 թվականը մեր երկրում նշանավորվեց նաև նրանով, որ հրապարակվեցին ՍՍՌՄ Կառավարության որոշումները՝ Վոլգայի վրա



Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայաններ, Ամու-Դարյա—Կրասնովոդսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցք, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայան, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքներ, Վոլգա-Դոն նավարկելի ջրանցք կառուցելու մասին։

1950 թվականին խոշոր իրադարձություններ տեղի ունեցան նաև մեր երկրի քաղաքական կյանքում։ Մարտի 12-ին տեղի ունեցան ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները։ Այդ ընտրություններին կոմունիստների և անկուսակցականների բլոկի առաջադրած թեկնածուների օգտին քվեարկեց ընտրություններին մասնակցած բոլոր ընտրողների 99,73 տոկոսը՝ Միության Սովետում և 99,72 տոկոսը՝ Ազգությունների Սովետում։ Այսպիսով, սովետական ամբողջ ժողովուրդը միահամուռ կերպով մեկ անգամ ևս ցուցադրեց իր համախմբվածությունը բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։

Դեկտեմբերի 17-ին տեղի ունեցան աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները ՌՍՖՍՌ-ում, Ուկրաինական, Բելոռուսական, Ղազախական, Վրացական, Լիտվական, Լատվիական,

Էստոնական և Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ներում, իսկ դեկտեմբերի 24-ին՝ Ուզբեկական, Տաջիկական, Կիրգիզական, Թուրքմենական, Ադրբեջանական, Հայկական և Մոլդավական ՍՍՌ-ներում: Այդ ընտրությունները նույնպես հանդիսացան կոմունիստների և անպարտիականների բլոկի մի նոր, փայլուն հաղթանակը:

1950 թվականը նոր, փայլուն նվաճումների տարի հանդիսացավ նաև Հայկական ՍՍՌ-ի համար: Այս տարի Սովետական Հայաստանը բոլորեց իր 30-ամյակը: Հանրագումարի բերելով սովետական իշխանության 30 տարիների ընթացքում հայ ժողովրդի ձեռք բերած նվաճումները, ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի քարտուղար ընկ. Գր. Հարությունյանը Երևանում Ի. Վ. Ստալինի մոնումենտ-քանդակի բացմանը նվիրված միտինգում արտասանած ճառում ասաց. «Սովետական իշխանության գոյության ժամանակաշրջանում հայ ժողովրդի ամենաաչքի ընկնող նվաճումը իր պետականության վերականգնումն է և հավասարության հիմունքներով մեծ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ մտնելը, որը ամենահզոր պետությունն է ամբողջ աշխարհում»:



Հավասար իրավունքներով մեծ Սովետական Միության մեջ գտնվելու շնորհիվ է, որ պատմական այսքան կարճ ժամանակաշրջանում այսպիսի աննախընթաց կերպով ծաղկեց ու բարգավաճեց մեր ռեսպուբլիկան, հետամնաց գյուղատնտեսական երկրից դառնալով զարգացած արդյունաբերություն և կոլտնտեսային մեքենայացված գյուղատնտեսություն ունեցող Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկա:

Թե Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների մեծ, համերաշխ ընտանիքում ինչպիսի հսկայական քայլերով է զարգանում ու առաջ ընթանում մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը, երևում է հետևյալ պերճախոս թվերից. դեռ անցյալ տարի Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերությունը երկու անգամ ավելի շատ արտադրանք տվեց, քան նախապատերազմյան 1940 թվականին: Կապիտալ շինարարության ծավալը 1949 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ 43 տոկոսով:

Իսկ ահա թե ինչ նոր, փայլուն հաղթանակներ ձեռք բերեցին Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, կուլտուրան, արվեստն ու գիտությունը 1950 թվականին:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ընթացիկ տարվա 11 ամսվա պլանը կատարեց 103,6 տոկոսով։ Պլանից դուրս թողարկվեց զգալի քանակությամբ ավտոդող, էլեկտրալար, մետաղահատ դազգահներ, ցեմենտ, կորդ, բամբակյա և մետաքսյա գործվածքներ, կաշվեղեն, պահածոներ, կոնյակ, գինի, հանքային ջրեր, կենդանական յուղ, միս, ձուկ, ծխախոտ և այլն։ Այդ նույն ժամանակամիջոցում ավելի քան 150 արդյունաբերական ձեռնարկություններ կատարեցին և գերակատարեցին տարեկան պլանները։

Արդյունաբերության համախառն արտադրանքն այս տարվա 11 ամիսների ընթացքում, 1949 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 27 տոկոսով։ Առաջավոր տեխնիկական պրոցեսների, աշխատանքային նոր մեթոդների ներդրման, կորուստների պակասեցման, արտադրության մնացորդների օգտագործման շնորհիվ իջեցվեց արտադրանքի մեկ միավորի համար կատարվող հումքի ու էլեկտրական էներգիայի ծախսը։ Գերկատարված է արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը։ Այս տարվա 10 ամիսների ընթացքում արտադրանքի ինքնարժեքն իջեցվել է 13 տոկոսով։

1950 թվականին նոր հաջողությունների



հասավ ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների, բամբակի, շաքարի ճակնդեղի և այլ կուլտուրաների բերքատվությունը գերազանցեց անցյալ տարվանից։ Կենսագործելով մեր պարտիայի և կառավարության դիրեկտիվները, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ աշնանացան հացահատիկի տարածությունները ընդարձակեցին ավելի քան 26 հազար հեկտարով։ Մինչև դեկտեմբերի 20-ը ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանները 122 հազար հեկտարով ավելի տրակտորային աշխատանքներ են կատարել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

Այս տարի ռեսպուբլիկայում մեծ թափով շարունակվեցին իռիգացիոն շինարարական աշխատանքները։ Ավարտվեց Թալինի ջրանցքի շինարարությունը և եկող տարվա գարնանից նրա ջրերը կոռոգեն Ալագյազ կայարանի շրջանի 12 հազար հեկտար անջրդի, ամայի հողերը։ Այս տարի լրիվ կարողությամբ սկսեց գործել Ներքին Զանգվի ջրանցքը, որը ջուր է մատակարարում 9 հազար հեկտար դաշտերի։ 1950 թվականին Շիրակի ճակնդեղի դաշտերին ջուր տվեց ռեսպուբլի-

կայի խոշորագույն՝ Արփա լճի ջրամբարը, որի ջրերն այսուհետև կարող են ոռոգել 19 հազար հեկտար տարածություն։ Ջրաշինարարները շորացրին և մշակության համար պիտանի դարձրին նաև Արարատյան դաշտի 1500 հեկտար ճահճային հողեր։

1950 թվականի ընթացքում շարունակվեց ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը. էլեկտրիֆիկացվեցին ևս 148 կոլտնտեսություններ։ Ավարտվեցին Ստեփանավանի, Միկոյանի, Ազիզբեկովի շրջաններում կառուցվող հիդրոկայանների շինարարությունները և շուտով նրանք էլեկտրականությամբ կզինեն նոր տասնյակ կոլտնտեսություններ։

Այժմ մի քանի համառոտ տեղեկություններ այն մասին, թե 1950 թվականի ընթացքում ինչպիսի նվաճումներ ձեռք բերին ռեսպուբլիկայի արդյունաբերության առանձին ճյուղեր։

Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները այս տարի 40 տոկոսով ավելի արտադրանք ավելցին, քան 1949 թվականին։ Հիմնականում ավարտվեց Երևանի Նուրբ մահուդի ֆաբրիկայի մանվածքային կորպուսը, որը մեկ-երկու շաբաթից կսկսի արտադրանք տալ։ Խրոմպիկի



գործարանում գործարկվեց 2-րդ մեքենայացված վառարանը, որով երկու անգամ ավելացավ գործարանի արտադրական կարողությունը։ Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում ավարտվեց մետաքսյա սպիտակեղենի ցեխի շինարարությունը, շահագործման հանձնվեցին Երևանի Մետաքսի ֆաբրիկայի փաթաթման և Կոշիկի № 1 ֆաբրիկայի տաք ջեռուցման ցեխերը, Բերիայի շրջանի Մետաքսագործվածքային ֆաբրիկայի նախապատրաստական և Տրիկոտաժի ֆաբրիկայի կարող ցեխերը, մեքենայացվեցին կոշիկի, կաշվի, տրիկոտաժի գործարանների մի շարք արտադրական պրոցեսներ։ Երևանի Մահուդի ֆաբրիկան այս տարի յուրացրեց 10 նոր տեսակի մահուդների արտադրությունը։

1950 թվականի ընթացքում խոշոր աճ ունեցավ ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը։ 1950 թվականին հացի և խմորեղենի արտադրանքը, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, աճեց 1,7 անգամ, օճառինը՝ 1,8 անգամ, հրուշակեղենինը՝ 1,7 անգամ, պլանակներինը՝ 2,4 անգամ, հանքային ջրերինը՝ 1;7 անգամ և այլն։ 1950 թվականին շահագործման հանձնըվեցին Արզնու ապակյա տարայի գործա-

րանը, Մարտունու ձկան պահածոների գոր-
ծարանը, Ղափանի պահածոների գործարա-
նը, Երևանի Հացի 2-րդ գործարանը։ Հոկ-
տեմբերյանի և Բերիայի շրջաններում գոր-
ծարկվեցին Լիմոնադի գործարանները։ Մեծ
թափով շարունակվեցին Երևանի Կոնյակի,
Գարեջրի, Աշտարակի Խերեսի, Կիրովականի
Հացի գործարանների շինարարությունները։
Այդ նորակառույցները շարք կմտնեն 1951
թվականին։

1949 թվականի նկատմամբ այս տարի 40
տոկոսով ավելի արտադրանք տվեցին ռես-
պուբլիկայի տեղական արդյունաբերության
ձեռնարկությունները, որոնք յուրացրին ար-
տադրանքի բազմաթիվ նոր տեսակների ար-
տադրությունը։

ՍՍՌՄ կառավարության որոշմամբ 1949,
1950 և 1951 թվականների ընթացքում Հայ-
կական ՍՍՌ-ում պետք է կառուցվի և շահա-
գործման հանձնվի մսի, կաթի և կաթնամը-
թերքի վերամշակման 25 գործարան, հագեց-
ված վերամշակման և սառեցման նորագույն
տեխնիկայով։ Այս տարի խոշոր թափով շա-
րունակվեցին Լենինականի, Կիրովականի,
Սպիտակի, Մարալիկի կաթնագործարանն-
րի շինարարությունները։ Նրանք բոլորն էլ
շարք կմտնեն եկող տարի։ 1950 թվականին



ռեսպուբլիկայի քաղաքներում շահագործման
հանձնվեցին 3.500 տոննա մթերքի տարո-
ղություն ունեցող նոր սառցարաններ։

1950 թվականին նոր, լայն թափ ստացավ
շինանյութերի արդյունաբերությունը։ Այս
տարի ռեսպուբլիկայի շինանյութերի ար-
դյունաբերությունը երեք անգամ ավելի ար-
տադրանք տվեց, քան նոր հնգամյակի ա-
ռաջին տարում՝ 1946 թվականին։

Ժամկետից 10 օր շուտ տարեկան պլան-
ները կատարեցին Հայկական ՍՍՌ Անտա-
ռային և թղթի արդյունաբերության մինիս-
տրության ձեռնարկությունները։ Այս տարի
Իջևանի անտառտնտեսությունում յուրաց-
վեց ֆաներայի արտադրությունը։ Արտա-
դրության այդ նոր տեսակը թողարկող ցե-
խի տարեկան կարողությունն է 600 հազար
քառակուսի մետր ֆաներա։ Այս տարի հիմ-
նականում ավարտվեց և շահագործման
հանձնվեց Արաբկիրի Կահույքի ֆաբրիկան։

1950 թվականը մեր ռեսպուբլիկայի հա-
մար հանդիսացավ նոր նվաճումների տարի
նաև կուլտուրայի և, առաջին հերթին, ժո-
ղովրդական լուսավորության բնագավառում։
Այս տարի հաջող կերպով շարունակվեց
գյուղում 7-ամյա, իսկ քաղաքում միջնա-

կարգ պարտադիր կրթություն անցկացնելու գործը։ 1949—50 թ. ուսումնական տարում ռեսպուբլիկայի 5—7-րդ դասարաններում սովորող աշակերտների թիվը 34 հազարով ավելի է նախորդ ուսումնական տարվանից։ Ռեսպուբլիկայի ժողովրդական լուսավորության ծախսերն այս տարի կազմեցին 505 միլիոն ռուբլի։ Միայն նոր դպրոցների կառուցման և եղածների վերանորոգման վրա ծախսվեց 12 միլիոն ռուբլի, անցած տարի ծախսված 8 միլիոն ռուբլու դիմաց։ Երևանում շահագործման հանձնվեցին հինգ նոր դպրոցական շենքեր։ Դպրոցական նոր շենքեր կառուցվեցին նաև Լենինականում, Կիրովականում, Աշտարակի շրջանի Կոշ, Սիսիանի շրջանի Անգեղակոթ, Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր, Կոտայքի շրջանի Ջրաբեր գյուղերում։ Դպրոցական նոր շենքերի շինարարություններ սկսվեցին ռեսպուբլիկայի մի շարք ուրիշ շրջանային կենտրոններում և գյուղերում։ Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններն այս տարի ավարտեց 800 մարդ, մանկավարժական ուսումնարանները՝ 400 մարդ։

Սովետական Հայաստանի աշխատավորական մասսաների կուլտուրական հզոր վերել-



քի փայլուն ապացույց են հանդիսանում նաև հետևյալ թվերը։ Եթե 1921 թվականին մեր ռեսպուբլիկայում լույս է ընծայվել 10 անուն գիրք՝ 21.600 տիրաժով, ապա այս տարի Հայպետհրատը լույս ընծայեց 608 անուն գիրք՝ 3.919.400 տիրաժով։ 1927 թվականին ռեսպուբլիկայում վաճառվել է 820 հազար ռուբլու գրականություն, իսկ այս տարի 31 միլիոն 600 հազար ռուբլու։

1950 թվականի ընթացքում Երևանում բացվեց 9 նոր գրադարան, որոնցից 4-ը մանկական։ Մասսայական գրադարաններ բացվեցին քաղաքի նոր ավաններում։ Իսկ ռեսպուբլիկայի շրջաններում բացվեցին 6 նոր շրջանային, 37 գյուղական և 18 մանկական գրադարաններ։ Ռեսպուբլիկայի մասսայական գրադարանների գրքի ֆոնդն ավելացնելու համար պետությունն այս տարի ծախսել է մոտ երեք միլիոն ռուբլի։

1950 թվականին հայ ժողովուրդը առաջընթաց նոր քայլ կատարեց իր արվեստի զարգացման բնագավառում։ Ռեսպուբլիկայի թատրոններն այս տարի բեմադրեցին ավելի քան 30 նոր պիեսներ, որոնցից 6-ը սովետահայ դրամատուրգների նոր ստեղծագործություններից։ Այսպես, Սունդուկյանի

անվան թատրոնը բեմադրեց Գ. Բորյանի և Հ. Ղափլանյանի՝ «Հրաշալի գանձ», Մ. Օվ-չիննիկովի՝ «Խղճախում» պիեսները, Ստա-նիսլավսկու անվան ռուսական թատրոնը՝ Մ. Զամանովի՝ «Մեր թանկագին հյուրերը» պիեսը, Երաժշտական կոմեդիայի թատրոնը՝ Մ. Քոչարյանի «Հին հիվանդություն» պիեսը։ Սպենդիարովի անվան Օպերայի և բալետի թատրոնը բեմադրեց 4 նոր օպերաներ, այդ թվում Հարո Ստեփանյանի՝ «Հերոսուհի» և Արմեն Տիգրանյանի «Դավիթ բեկ» օպերա-ները։

1950 թվականին տեղի ունեցավ ժողովըր-դական ստեղծագործության ռեսպուբլիկա-կան օլիմպիադա՝ նվիրված Սովետական Հայաստանի 30-ամյակին։ 40 հազար բան-վորներ, կոլտնտեսականներ, կառուցողներ, ուսուցիչներ, ուսանողներ, արհեստագործա-կան ուսումնարանների սովորողներ մասնակ-ցեցին այդ օլիմպիադային։

1950 թվականին Երևանի Կինոստուդիան տվեց 2 նոր կինոնկար՝ «Արարատյան դաշ-տի աղջիկը» և «Սովետական Հայաստան»



ֆիլմերը և 24 խրոնիկական կինոժուռնալ-ներ։ Այս տարի սկսվեց «Երկրորդ քա-րավան» գեղարվեստական ֆիլմի նկարա-հանումը։

Սովետական Հայաստանի 30-ամյակի տոնակատարության օրերին տեղի ունեցավ արվեստի աշխատողների ստեղծագործական հաշվետվությունը։ Ստեղծագործական մեծ նվաճումներ ցուցադրեցին մեր երաժիշտ-ները։ Ստեղծագործական հաշվետվության տասնօրյակի ընթացքում կատարվեցին հայ կոմպոզիտորների երաժշտական բազմաթիվ գործեր, որոնք ստեղծվել են գլխավորապես վերջին տարվա ընթացքում։ Դրանց թվում են՝ երկու նոր օպերա, մի քանի կանտատա, սիմֆոնիկ պոեմներ, ստեղծագործություն-ներ կամերային անսամբլների համար, շատ երգեր և այլն։

Տարեց-տարի բարելավվում է մեր ռես-պուբլիկայի ժողովրդական առողջապահու-թյան գործի դրվածքը։ Բավական է ասել, որ այս տարի ռեսպուբլիկայում ժողովրդա-կան առողջապահության համար պետու-թյան կատարված ծախսերը 10 միլիոն ռուբլով ավելի էին, քան 1949 թվականին։

Այս տարի նոր հիվանդանոցներ կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Կալինինոյի, Ջանգիբասարի, Հոկտեմբերյանի, Արտաշատի շրջանային կենտրոններում։ 190 մահճակալով ավելացավ գյուղական հիվանդանոցներում եղած մահճակալների թիվը։ Այս տարի 5—10 մահճակալ ունեցող նոր հիվանդանոցներ բացվեցին Արթիկի շրջանի Հոռոմ, Ազիզբեկովի շրջանի Գնդեվազ, Գորիսի շրջանի Տեղ, Շամշադինի շրջանի Այգեձոր, Բասարգեչարի շրջանի Զոդ, Ղափանի շրջանի Արծվանիկ, Աղինի շրջանի Սառնաղբյուր և ուրիշ շրջանների մի շարք գյուղերում։ 40 գյուղերում բացվեցին կոլտնտեսային ծննդատներ, 16 գյուղերում մանկական կոնսուլտացիաներ։ Այս տարի առողջապահության ֆրոնտում աշխատանքի անցան Երևանի Բժշկական ինստիտուտի 223 նորավարտ բժիշկներ և ռեսպուբլիկայի բժշկական ուսումնարանների 437 նորավարտ միջին բուժպերսոնալի աշխատողներ։

1950 թվականի ընթացքում է՛լ ավելի ծաղկեցին ու գեղեցկացան մեր ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը, կառուցվեցին



տասնյակ հարյուրավոր նոր բնակելի շենքեր, բացվեցին նոր փողոցներ, զբոսավայրեր։

Առանձնապես մեծ բարեփոխումներ կատարվեցին մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում, որն ավելի զարդարվեց ու գեղեցկացավ։

1950 թվականի նոյեմբերի 29-ին, Սովետական Հայաստանի 30-ամյակի օրը, Երևանում բացվեց աշխատավոր մարդկության հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար մեծ Ստալինի հոյակապ մոնումենտ-քանդակը։ Երախտագետ հայ ժողովուրդն այդ մոնումենտ-քանդակը կանգնեցրել է ի նշան իր անսահման նվիրվածության բոլշևիկյան պարտիային, նրա մեծ առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին, ի նշան երախտագիտության հայ ժողովրդի նկատմամբ նրա մշտական անգնահատելի ուշադրության, ի նշան շնորհակալության ընկեր Ստալինին նրա զորավարական հանճարի համար Հայրենական պատերազմում ֆաշիստական հրոսակախմբերին ջախջախելու և մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանելու գործում։

—O—

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Ավարտվում է իրադարձություններով հարուստ 1950 թվականը։ 1950 թվականին, շարունակելով իր խաղաղ ստեղծագործ աշխատանքը, սովետական ժողովուրդը ձեռք բերեց նոր, խոշոր հաջողություններ։ Սովետական ժողովուրդը, որին ղեկավարում է բոլշևիկյան պարտիան, մեծ առաջնորդ ընկեր Ստալինը, ձեռնամուխ եղավ անապատների ոռոգման և հսկա էլեկտրակայանների կառուցման վիթխարի նախագծերի կենսագործմանը, կառուցումներ, որոնք է՛լ ավելի կբարձրացնեն մեր երկրի աշխատավորների բարեկեցությունը և ավելի կարագացնեն երկրի առաջընթացը՝ դեպի կոմունիզմ։

Մինչդեռ անցած ժամանակամիջոցում ամերիկյան իմպերիալիստները, որոնք գլխավորում են համաշխարհային ռեակցիան, ակտիվացրին իրենց քայքայիչ գործունեու-



թյունը, նպատակ ունենալով տիրապետություն հաստատել աշխարհի ազատասեր ժողովուրդների վրա։ Կորցնելով իրենց ոտքերի տակի հողը, ամերիկյան իմպերիալիստները սպառնալիքներից անցել են ուղղակի ագրեսիվ գործողությունների, հանցագործ պատերազմ սկսելով կորեական ժողովրդի դեմ, ոտնձգություն կատարելով Չինաստանի տերիտորիալ ամբողջականության նկատմամբ։ 1950 թվականի հունիսին Հարավ-կորեական իրենց մարիոնետներին պատերազմի դրդելով Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի դեմ, ամերիկյան իմպերիալիստները ձգտում էին սարկացնել ամբողջ Կորեան, այն դարձնել իրենց գաղութը, ինչպես նաև պլացդարմ՝ Չինաստանի և Սովետական Միության դեմ ագրեսիա սկսելու համար։ Սակայն լիսինմանական բանդան առաջին իսկ օրը պարտության մատնվեց և դրանից հետո ամերիկյան իմպերիալիստները բացահայտորեն զավթողական պատերազմ սկսեցին Կորեական ժողովրդի դեմ՝ Կորեա ուղարկելով իրենց նավատորմը, ցամաքային զորքերը և ավիացիան։ Միաժամանակ Միացյալ Նահանգները ագրեսիա սկսեցին նաև Չինաստանի դեմ, օկուպացնելով չինական Տայվան կղզին և

ամրակոծելով չինական բնակավայրերը։ Ամերիկյան կառավարությունը այդ հանցագործ ագրեսիան փորձում է քողել Միավորված Ազգերի Կազմակերպության դրոշով։ Ագրեսիվ պատերազմ սկսելով Հեռավոր Արևելքում, ամերիկյան իմպերիալիստները իրենց լկտիությամբ այնտեղ են հասել, որ փորձում են իրենց զավթողական քաղաքականության գործիք դարձնել Միավորված Ազգերի Կազմակերպությունը, որը կոչված է լինելու ժողովուրդների անվտանգության պահապանը։ Այդ ձգտումն առանձնապես պարզորեն դրսևորվեց Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի Հինգերորդ սեսիայում, երբ ամերիկյան դելեգացիան մտցրեց մի շարք այնպիսի առաջարկներ, որոնց նպատակն է՝ ի խախտումն Միավորված Ազգերի Կազմակերպության Կանոնադրության, փաստորեն վերացնել Անվտանգության Խորհրդում կարևորագույն որոշումների ընդունման ժամանակ մեծ տերությունների միաձայնության կանոնը։ Ինչպես հայտնի է, ամերիկացիները առաջարկ մտցրին՝ եթե Անվտանգության Խորհուրդը չի կարող որոշակի որոշում ընդունել, հարցը հանձնել Գլխավոր Ասամբլեայի քննարկմանը, որն իրավունք կստանա «հանձնարարականներ» ընդունել զինված ուժեր գործադրելու մասին՝ իբր «ագրեսիայի» դեմ պայքարելու համար։ Սակայն միանգամայն պարզ է, որ դրանով իսկ ամերիկյան իմպերիալիստները ձգտում են օգտագործել Գլխավոր Ասամբլեայում (որտեղ գոյություն չունի մեծ տերությունների միաձայնության կանոնը) ունեցած հլու հնազանդ «մեծամասնությունը» քողարկելու իրենց ագրեսիան այն ժողովուրդների դեմ, որոնք պայքարում են իրենց ազատության համար։ Բացի դրանից, ամերիկյան դելեգացիան կատաղի կերպով դեմ դուրս եկավ Սովետական Միության խաղաղասիրական այն առաջարկներին, որոնց նպատակն է վերջ տալ ամերիկյան ագրեսիային Հեռավոր Արևելքում և ապահովել խաղաղությունն ամբողջ աշխարհում։

Արտահայտելով ամբողջ աշխարհի միլիոնավոր հասարակ մարդկանց շահերը, սովետական դելեգացիան առաջարկ մտցրեց՝ մեկ տարվա ընթացքում մեկ երրորդով կրճատել մեծ տերությունների զինված ուժերը և այդ տերությունների միջև կնքել խաղաղության պակտ, ինչպես նաև արգելել ատոմային զենքը և պատերազմի հանցագործ հայտարարել այն կառավարությանը, որը առաջինը կգործադրի ատոմային ռումբը։ Սո-

վետական Միության այս առաջարկները, որոնց նպատակն է ամրապնդել խաղաղությունը, մերժվեցին ամերիկյան դելեգացիայի և նրան պաշտպանող անգլիական դելեգացիայի ռունձգությունների հետևանքով։

Ամերիկյան իմպերիալիստները, կուտակելով ռազմական մեծ ուժեր, ոչնչացնելով Կորեական խաղաղ բնակչությունը և ավերելով կորեական քաղաքներն ու գյուղերը, այնանը զավթեցին Կորեայի մի զգալի մասը։ Կորեական ժողովրդի գլխին լուրջ վտանգ էր կախվել։ Ամերիկյան զավթիչներն արդեն ցնծում էին, որ շուտով իրենց կհաջողվի զավթել ամբողջ Կորեան և ստրկացնել նրա ժողովրդին։

Կորեական ժողովրդի դահիճ, ամերիկյան գեներալ Մակարտուրը նոյեմբերի վերջերին արձակեց մի հրաման, որով ազդարարում էր ինտերվենտների զորքերի սկսվող մեծ հարձակումը, որի հետևանքով դեկտեմբերի վերջերին ինտերվենտները պետք է հաղթականորեն ավարտեին պատերազմը։ Ամերիկյան իմպերիալիստների այս զավթողական գործողությունները առաջ բերին առաջադեմ հասարակայնության զայրույթը բոլոր երկրներում։ Ամերիկյան ագրեսորների հանցավոր գործողությունները առանձնապես



մեծ զայրույթ առաջ բերին Չինաստանում, որի ժողովուրդը ոչ շատ վաղուց ազատագրվելով իմպերիալիստների և նրանց դրածոների լծից, ստեղծել է իր ժողովրդական ռեսպուբլիկան, կանգնել է զարգացման դեմոկրատական ուղու վրա։ Ամերիկյան զավթիչների՝ Կորեայում կատարած ագրեսիան անմիջական սպառնալիք է ստեղծել նաև Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի անվտանգությանը։ Ամբողջ Չինաստանում համաժողովրդական շարժում սկսվեց կորեական եղբայրական հերոս ժողովրդին օգնություն ցույց տալու համար։ Շատ և շատ չինացիներ, որպես կամավորներ, մեկնեցին Կորեա՝ օգնելու կորեական ժողովրդին իր ազատությունն ու անկախությունը պաշտպանելու գործում։

Եվ շուտով դրությունը փոխվեց. տապալվեց ինտերվենտների ձեռնարկած մեծ հարձակումը, հարձակում, որի մասին այնքան լայնորեն ռեկլամ էին անում նրանք։ Ամերիկյան զավթիչները ոչ միայն կանգնեցվեցին, այլև կործանիչ պարտության մատնվեցին։ Կորեայում ամերիկյան զորքերի ջախջախումը, որը բառ էության նշանակում է Տրումենի և Աչեսոնի կողմից կիրառվող ագրեսիվ քաղաքականության սնանկություն, շփոթ ու խրա-

րանցում առաջ բերեց իմպերիալիստների մեջ։ Տրումենի և Աչեսոնի քաղաքականության նկատմամբ դժգոհություն սկսեցին արտահայտել ոչ միայն լայն հասարակության ներկայացուցիչները, այլև ամերիկյան կառավարող շրջանների առանձին անձինք՝ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Հուվերը, Անգլիայի ամերիկյան նախկին դեսպան Կեննեդին և ամերիկյան քաղաքական այլ գործիչներ, որոնք արդեն գլխի են ընկնում, որ Տրումենի ու Աչեսոնի կողմից կիրառվող քաղաքականությունը կարող է կատաստրոֆի հասցնել երկիրը, սկսեցին պահանջել, որ վերջ դրվի ակտիվ միջամտությանը Ասիայի և Եվրոպայի գործերին։

Կորեայում ամերիկյան ագրեսիայի տապալումը տագնապ է առաջ բերել և՛ արևմտաեվրոպական պետությունների կառավարող շրջաններում, որոնք իրենց քաղաքականությունը կապակցում էին ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականության հետ։ Այս կապակցությամբ դեկտեմբերի 4—8-ը Վաշինգտոնում տեղի ունեցավ Տրումենի և անգլիական պրեմյեր-մինիստր Էտլիի խորհրդակցությունը։ Այդ խորհրդակցության արդյունքների վերաբերյալ հրապարակված կոմյունիկեն ցույց է տալիս,



որ ամերիկյան կառավարությունը և նրա պոչից քարշ եկող անգլիական կառավարությունը որոշել են շարունակել Կորեայում սկսած իրենց ագրեսիան։ Նրանք համաձայնության են եկել ավելացնելու իրենց զինված ուժերը, ընդարձակելու իրենց ռազմական արտադրությունը։ Դրա հետ միասին, Վաշինգտոնի բանակցությունները ցույց են տալիս, որ բրիտանական կառավարող շրջաններն ավելի ու ավելի հեռու են գնում իրենց երկրի ազգային շահերին դավաճանելու գործում։ Այսպես, հիշյալ կոմյունիկեում ասված է, որ երկու կողմերը համաձայնության են եկել հումքի կարևորագույն աղբյուրների նկատմամբ միջազգային (հասկացիր՝ ամերիկյան) վերահսկողություն հաստատելու մասին։ Խոսքը վերաբերում է անագին, կաուչուկին, բրդին, որոնք հիմնականում մատակարարում են բրիտանական կայսրության մեջ մտնող երկրները։ Դա էլ ավելի մեծ չափով ավելացնում է Անգլիայի տնտեսական ու ֆինանսական կախվածությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներից։

Տրումենի և Էտլիի խորհրդակցության արդյունքները հիասթափություն առաջ բերին այն շրջաններում, որոնք ցանկանում էին, որ ամերիկյան և անգլիական կառավարու-

թյունները շուտափույթ ձեռք քաշեին անհուսալի կորեական ավանտյուրայից։ Անգլիայում այնքան մեծ է դժգոհությունն այդ խորհրդակցությունից, որ նույնիսկ լեյբորիստներից շատերը զայրացած են Էտլիի դավաճանական քաղաքականությունից, որը դարձել է Ուոլ-Ստրիտի մագնատների հլու ծառան։ Լեյբորիստ Սիլկինը հանդես եկավ այն հայացքի դեմ, թե իբր պատերազմն անխուսափելի է, և կառավարությանը կոչ արեց ինքնուրույն քաղաքականություն վարել։ Անգլիական կոմպարտիայի ղեկավարներից մեկը՝ Պալմ Դատտը «Դեյլի Ուորկեր» թերթում հրապարակված հոդվածում գրել է, որ Տրումենի և Էտլիի խորհրդակցությունը «խաղաղության խորհրդակցություն չէր, այլ պատերազմի կոնֆերենցիա, որի ընթացքում քննության առնվեցին պատերազմական նոր միջոցառումներ»։ Պալմ Դատտը կոչ արեց հանդես գալ ընդդեմ ամերիկյան իմպերիալիզմի հետ կնքված նման խայտառակ գործարքի։

ԱՄՆ-ի կառավարող շրջանները շարունակում են բորբոքել պատերազմական հիստերիան։ Վերջերս ԱՄՆ պրեզիդենտ Տրումենը հանդես եկավ երկրում «արտակարգ դրություն» մտցնելու հայտարարությամբ։ Այդ



հայտարարության համաձայն՝ խիստ պետք է աճեն զինված ուժերը, ավելանա սպառազինության արտադրությունը։ Տրումենը բոլոր այդ պատերազմական միջոցառումները բացատրում է նրանով, որ իբր Միացյալ Նահանգները սպառնալիքի տակ են, որ իբր թե նույնիսկ ամերիկացիների տներին վտանգ է սպառնում»։

Սակայն դա պարզելի կեղծիք է, որովհետև ամենքին հայտնի է, որ իրականում ոչ ոք չի մտածում Ամերիկայի վրա հարձակվել, Ամերիկայի ջրերում չկան օտարերկրյա ռազմանավեր և ոչ մի տերության զորք մտադրություն չունի ամերիկյան տերիտորիան մտնել։ Ընդհակառակը, հենց ամերիկյան զորքերն են, որ ներխուժել են Կորեա, հենց նրանք են, որ գրավել են չինական Տայվան կղզին, հենց ամերիկյան ավիացիան է, որ ռմբակոծում է կորեական քաղաքներն ու գյուղերը, խախտում չինական սահմանների անձեռնմխելիությունը։

Պարզ է, որ «արտակարգ դրություն» մտցնելը նպատակ ունի է՛լ ավելի բորբոքել պատերազմական հիստերիան, ծավալել նոր պատերազմի պատրաստումը։

Բոլոր այս պատերազմական միջոցա-

ռումները պահանջում են հսկայական ծախսեր, որոնց ծանրությունն ընկնում է աշխատավորների ուսերին։ Տրումենն ուղղակի հայտարարեց, որ «բանվորները պետք է ավելի շատ աշխատեն», որ գները «անխուսափելիորեն» բարձրանալու են, որ աշխատավարձը սահմանափակվելու է, որ բնակչությունը «ստիպված կլինի ավելի շատ հարկեր վճարել»։

Այս բոլորի հետ միասին ամերիկյան իմպերիալիստները ուժեղացնում են Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ մտնող արևմտա-եվրոպական երկրների սպառազինումը։ Վերջերս Բրյուսելում տեղի ունեցավ Հյուսիս-Ատլանտյան բլոկի երկրների պաշտպանության մինիստրների և արտաքին գործերի մինիստրների նիստ։ Այդ նիստի մասին հրապարակված կոմյունիկեից երևում է, որ մշակվել են միջոցառումներ ստեղծելու այսպես կոչված միավորված բանակ՝ կենտրոնացված հրամանատարությամբ։ Տրումենն արդեն Հյուսիս-Ատլանտյան դաշինքի զինված ուժերի գերագույն հրամանատար է նշանակել գեներալ Էյզենհաուերին։ Կոմյունիկեից երևում է նաև, որ ամերիկացիներին հաջողվել է, այսպես կոչված, Հյուսիս-Ատլանտյան բանակի կազմի մեջ մտցնել արև-



մտա-գերմանական ռազմական միավորումները։ Այսպիսով՝ ամերիկյան իմպերիալիստները ոչ մի ջանք չեն խնայում ուժեղացնելու ժողովուրդների ազատության և անկախության դեմ ուղղված ագրեսիվ պատերազմի պատրաստումը։

Որպես պատասխան նոր պատերազմի տենդագին նախապատրաստմանը՝ խաղաղասեր ժողովուրդներն էլ ավելի սերտորեն են համախմբվում խաղաղության և ազատության համար մղվող պայքարում։ Ինչպես հայտնի է, 1950 թվականը նշանավորվեց խաղաղության կողմնակիցների շարժման չտեսնված ծավալմամբ։ 1950 թվականի մարտին, Ստոկհոլմում, ընդունվեց բոլոր երկրների խաղաղության կողմնակիցներին ուղղված կոչը՝ ատոմային զենքն արգելելու և այդ զենքը առաջինը գործադրող կառավարությանը պատերազմի հանցագործ հայտարարելու մասին։ Այդ կոչը, որ արտահայտում է աշխարհի ժողովրդական մասսաների իղձերը, ջերմ արձագանք գտավ բոլոր երկրներում։ Բարի կամքի հարյուր միլիոնավոր մարդիկ բոլոր երկրներում իրենց ստորագրությունները դրին Ստոկհոլմի կոչի տակ։ Դա մի ահեղ նախազգուշացում է ագրեսորներին։

1950 թվականի նոյեմբերին, Վարշավայում, տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսը։ Այդ Կոնգրեսն ընդունեց աշխարհի ժողովուրդներին ուղղված մանիֆեստ, որով կոչ է արվում ուժեղացնել նոր պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարը, և Դիմում՝ Միավորված Ազգերի կազմակերպությանը։ Դիմումի մեջ առաջարկվում է ձեռք առնել մի շարք միջոցառումներ և առաջին հերթին, հրավիրել հինգ մեծ տերությունների՝ ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Սովետական Միության, Անգլիայի և Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի կոնֆերանս՝ գոյություն ունեցող տարաձայնությունները խաղաղ կերպով կարգավորելու համար։ Կոնգրեսը ստեղծեց խաղաղության համար մղվող պայքարի մշտական օրգան՝ Խաղաղության Համաշխարհային Խորհուրդ։ Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի որոշումները նպաստում են էլ ավելի ակտիվացնելու աշխատավորների պայքարը իմպերիալիստների՝ նոր պատերազմի հրդեհը բորբոքելու փորձերի դեմ։ Ներկայումս խաղաղության համաժողովրդական շարժումն



ընդունել է չտեսնված թափ ու ծավալ, միավորելով իր շարքերում բոլոր ազնիվ մարդկանց՝ համայն աշխարհում։ Խաղաղության համար մարտնչողների առաջին շարքերում ընթանում է սովետական ժողովուրդը, որին առաջնորդում է խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինը։

Այդ պատճառով էլ կասկած չի կարող լինել, որ ժողովուրդները կկարողանան վիժեցնել ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլանները և պաշտպանել խաղաղության գործը։

Լ. ՄԱՆԱՍԱՐՅԱՆ

—0—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ԼԵՆԻՆ.— Երկեր, *19-րդ հատոր։ 764 էջ, գինը 8 ռ.։*

ԼԵՆԻՆ.— Երկեր, *20-րդ հատոր։ 771 էջ, գինը 8 ռ.։*

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ.— Երկերի ժողովածու։ *10-րդ հատոր, 695 էջ, գինը 16 ռ. 90 կոպ.։*

ԱՍՔ ԻԳՈՐԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ՄԱՍԻՆ։ *85 էջ, գինը 3 ռ. 25 կոպ.։*

Մ. ՊՐԻԼԵԺԱԵՎԱ.— Քեզ հետ են ընկերները։ *272 էջ, գինը 4 ռ. 35 կոպ.։*

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ.— Արմենուհի։ *117 էջ, գինը 5 ռ.։*

ՄԿՐՏԻՉ ԱՍԼԱՆՅԱՆ.— Քողարկված հետքերով։ *218 էջ, գինը 5 ռ. 60 կոպ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 24** **1950 г.**

*ՎՖ 00002* *Պատվեր № 916* *Տիրաժ 9050*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Գինը 50 կոպ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1951 ԹՎԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիս 24 համար — 12 ռուբլի**
**6 ամիս 12 „ — 6 „**
**3 ամիս 6 „ — 3 „**
**Մեկ համար — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**